Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ




№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

## Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

1936 թվականի դեկտեմբերի 5-ը ընդմիշտ վառ կմնա սովետական ժողովրդի հիշողության մեջ, որպես նրա անցած փառապանծ ուղու փայլուն էջերից մեկը։ Այդ նշանավոր օրը Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարը հաստատեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան՝ Սովետական պետության Հիմնական Օրենքը։ Դա աշխարհում ամենադեմոկրատական կոնստիտուցիան է, որի մեջ ոսկե տառերով արձանագրված և օրենսդրականորեն ամրապնդված են սովետական ժողովրդի մեծ հաղթանակները նոր, սոցիալիստական կյանքի կառուցման բնագավառում։

Սովետական Կոնստիտուցիան սոցիալիստական հասարակարգի կոնստիտուցիա է, որը ՍՍՌՄ աշխատավորների համար օրենսդրականորեն ապահովում է ազատ ու երջանիկ կյանք, առանց շահագործման, առանց դասակարգային և ազգային ճնշման։



Սովետական Կոնստիտուցիայի առաջին հոդվածում ասված է, որ «Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետություն է»։ Այստեղ ձևակերպված է այն համաշխարհային-պատմական իրադարձությունը, որ սովետական երկրում լիակատար հաղթանակել է սոցիալիզմը, որ ՍՍՌՄ-ում վերջնականապես վերացված է մարդու կողմից մարդու շահագործումը, որ երկրի բոլոր հարստությունները սոցիալիստական սեփականություն են կազմում։ Այդ հակիրճ խոսքերի մեջ, այնուհետև պարունակվում է այն իրողությունը, որ Սովետական Միությունում ամբողջ իշխանությունը անբաժանելիորեն, հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների, պատկանում է բանվորներին ու գյուղացիներին։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան Սովետական Միության բոլոր քաղաքացիների համար ապահովում է աշխատանքի, կրթության, հանգստի, ծերության ժամանակ նյութական ապահովության մեծ իրավունքներ։ Սովետական Կոնստիտուցիան ապահովում է կանանց հավասար իրավունքներ տղամարդկանց հետ, քաղաքացիների իրավա-



հավասարություն՝ անկախ նրանց ազգությունից և ռասսայական պատկանելիությունից։ Աշխատավորների շահերի համապատասխան և սոցիալիստական հասարակարգի ամրապնդման նպատակով ՍՍՌՄ Կոնստիտուցիան մեր երկրի բոլոր քաղաքացիներին ընձեռում է քաղաքական մեծ ազատություններ՝ խոսքի, մամուլի, հասարակական կազմակերպությունների մեջ միավորվելու և այլ ազատություններ։ Սովետական դեմոկրատիայի բնորոշ կողմն այն է, որ այդ քաղաքական իրավունքներն ու ազատությունները ոչ միայն հռչակվում են Կոնստիտուցիայով, այլև պայմաններ են ստեղծվում դրանց իրականացման համար։

Սովետական դեմոկրատիայի մեծ առավելություններն իրենց վառ արտահայտությունն են գտնում այն միջոցառումներում, որոնք Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը իրականացնում են աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու նպատակով։ Մեր երկրում, սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ, իսպառ վերացված է գործազրկությունը։ 1913 թվականի համեմատությամբ 1957 թվականին, ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների և ծառայողների թիվն ա-

վերացել է 4 անգամ։ Բարձրացվել է ցածր վարձատրվող կատեգորիաների բանվորների և ծառայողների աշխատավարձը, կրճատվել է աշխատանքային օրը նախահանգստյան և նախատոնական օրերին, կենսագործվում է յոթժամյա աշխատանքային օրվա անցնելու վերաբերյալ պարտիայի 20-րդ համագումարի որոշումը։

Հայտնի է, որ Սովետական պետությունը հսկայական միջոցներ է հատկացնում սոցիալական ապահովության, նպաստների, կենսաթոշակների, սովորողների թոշակների, ձրի ուսուցման, բժշկական սպասարկման և այլ վճարումների համար։ Ընթացիկ 1957 թվականին, այդ հատկացումների գումարը կկազմի 192 միլիարդ ռուբլուց ավելի։

ՍՍՌՄ-ում կատարվել է իսկական կուլտուրական ռևոլյուցիա, որի շնորհիվ սովետական գիտությունն ու տեխնիկան աշխարհում առաջնակարգ տեղ են գրավում։ Ամբողջ ՍՍՌՄ-ում սովորողների ընդհանուր թիվը հասնում է ավելի քան 50 միլիոն մարդու, այսինքն մեր երկրի յուրաքանչյուր 4 բնակչից մեկը սովորում է ուսուցման այս կամ այն բնագավառում։

Սովետական դեմոկրատիան բուրժուական դեմոկրատիայի հակապատկերն է։ Բուր-



ժուական դեմոկրատիան կեղծ է և խաբեություն։ Ի՞նչ քաղաքական ազատությունների մասին կարող է խոսք լինել բուրժուական երկրներում, որտեղ տիրապետում են կապիտալիստներն ու կալվածատերերը, որտեղ հողը, ֆաբրիկաներն ու գործարանները կազմում են բուրժուազիայի սեփականությունը։ Բուրժուական երկրներում խոսքի ու մամուլի դեմոկրատիան ու քաղաքական ազատություններ գոյություն ունեն միայն հարուստների համար։

Կապիտալիստական երկրներում տպարանները, թղթի ֆաբրիկաները, հրատարակչությունները գտնվում են կապիտալիստների տրամադրության տակ։ ԱՄՆ-ում, օրինակ, հրատարակչությունների բացարձակ մեծամասնությունը գտնվում է Հերստի, Մակկորմիկ—Պատերսոնի, Ռոյ Հովարդի հզոր տրեստների ձեռքում, որոնք սերտորեն կապված են մոնոպոլիստական խմբերի հետ։ Հասկանալի է, որ այդ մամուլը հնազանդորեն ծառայում է ֆինանսական մագնատներին։

ԱՄՆ-ի բուրժուազիան պարծենում է իր քաղաքական ազատություններով։ Բայց իրականում այդ երկրում հատուկ օրգաններ կան, որոնք հսկում են քաղաքացիներին,

ինչպես, օրինակ, հակաամերիկյան գործունեության համար հետաքննող հանձնաժողովը, պետական ծառայողների հուսալիությունը հսկող հանձնաժողովը և այլն։ Բավական է մի անզգույշ խոսք ասել այնտեղ տիրող կարգերի մասին, և ահա մարդուն կարող են հեռացնել աշխատանքից առանց դատի, կհալածեն որպես «օտարազգի գործակալի»։ Կեղծիք է նաև այն, որ իբր թե ԱՄՆ-ում գոյություն ունի քաղաքացիների իրավահավասարություն։ Այսպես, ԱՄՆ-ի առանձին նահանգներում, զայրացուցիչ օրենքներ կան, որոնցով կանանց զրկում են ամենատարրական իրավունքներից։ Օրենք կա, որի համաձայն կինը իր վաստակը պարտավոր է հանձնել ամուսնուն, կամ տղամարդուն թույլատրվում է ծեծել կնոջը որոշ հասակում հասած ... տարիքում։ [sic: line reads] տուն թույլատրվում է ծեծել կնոջը որոշ հասուն թյուն ունեցող փայտով։



րին արգելված է սովորել սպիտակամորթների հետ։

Այն ժամանակ, երբ սոցիալիստական երկրներում բոլոր պայմաններն ստեղծվում են, որպեսզի աշխատավորները ակտիվ մասնակցեն երկրի կառավարման գործին, ավելի լիակատար օգտվեն քաղաքական բոլոր ազատություններից, բուրժուական պետությունները, ընդհակառակը, զրկում են նրանց այդ իրավունքներից, հարձակում են գործում բանվոր դասակարգի, աշխատավորների վրա, որոնք պայքարում են իրենց իրավունքների համար։ Բուրժուական պետությունները կոպտաբար ոտնահարում են կոնստիտուցիոն ազատությունները։ Օրինակ, Հունգարիայում տեղի ունեցած հակառևոլյուցիոն խռովության ճնշման առիթով կեղծիքի և զրպարտանքի կեղտոտ կամպանիա սկսվեց սոցիալիզմի երկրների դեմ։ Ֆրանսիայում փորձեցին փակել կոմունիստական մամուլի բերանը, որպեսզի ժողովուրդը չիմանա ճշմարտությունը հունգարական դեպքերի մասին։ Ռեակցիոներները կանգ չառան ոչ մի միջոցի առջև, մինչև անգամ հարձակում գործեցին «Յումանիտե» թերթի խմբագրության վրա։

Այսպիսին է բուրժուական դեմոկրատիա-

յի, բուրժուական քաղաքական ազատու֊թյունների իսկական դեմքը։

ՍՍՌՄ-ում ընտրական իրավունքը ամենադեմոկրատականն է աշխարհում։ Սովետական Կոնստիտուցիան ոչ միայն իրավունք, այլև իրական հնարավորություն է ապահովում բոլոր քաղաքացիներին ընտրություններին մասնակցելու համար։ Դրան հակառակ բուրժուական երկրներում ամեն ինչ արվում է, որպեսզի աշխատավորներին զրկեն քաղաքական կյանքին մասնակցելուց, դեպուտատներ ընտրելուց։ Այդ նպատակով ընտրողների համար ստեղծվում են բազմաթիվ սահմանափակումներ։ ԱՄՆ-ում, օրինակ, գոյություն ունի ընտրական 50 ցենզ։ Շատ նահանգներում ընտրական իրավունքից օգտվելու համար պահանջվում է գիտենալ անգլերեն լեզուն, կարողանալ ճիշտ շարադրել կոնստիտուցիայի բովանդակությունը և այլն։ Կապիտալիստական երկրներում քաղաքական իշխանությունը պատկանում է շահագործողներին։ ԱՄՆ-ի կոնգրեսի 531 անդամից 138-ը կապիտալիստ-ձեռնարկատերեր, 279-ը դատապաշտպաններ և 18-ը հողատերեր են։

Բուրժուական կեղծ դեմոկրատիայի նկատմամբ սովետական դեմոկրատիայի առավե-



լության վառ և համոզիչ ապացույց է ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմը։ Ներկայումս ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կան 45 ազգությունների ներկայացուցիչներ, 318 բանվոր, 220 գյուղացի, ինչպես նաև սովետական աշխատավորական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։

Սովետական Կոնստիտուցիան իսկական ինտերնացիոնալ բնույթ ունի, նա ելնում է այն փաստից, որ ՍՍՌՄ-ում բոլոր ազգերն ու ռասաները իրավահավասար են։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամական մեծ ընտանիքում ծաղկում ու բարգավաճում են բոլոր միութենական ռեսպուբլիկաները։ Այդ կարելի է ցույց տալ հենց Հայկական ՍՍՌ օրինակով։ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ նախկինում աղքատ, որբերի ու վշտի երկիր Հայաստանը սովետական իշխանության տարիներին դարձել է ծաղկուն սոցիալիստական ռեսպուբլիկա։ Բավական է ասել, որ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 45 անգամ։ Այն ժամանակ, երբ Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր, և իրականացված է ընդհանուր պարտա-

դիր ուսուցումը, հարևան Թուրքիայում երեխաների 37 տոկոսը դպրոց չի հաճախում. Թուրքիայի 16 գյուղերում բոլորովին դպրոցներ չկան։

Սովետական պետության խորը դեմոկրատական բնույթը իր համոզիչ արտահայտությունն է գտնում նաև մեր երկրի արտաքին քաղաքականության մեջ։ Սովետական պետությունն իր ստեղծման առաջին օրից միշտ էլ հանդես է եկել ամեն տեսակ ագրեսիայի դեմ, հետևողականորեն պաշտպանել և պաշտպանում է խաղաղության գործը։

Սովետական դեմոկրատիան անընդհատ զարգանում և կատարելագործվում է։ Այդ մասին են վկայում Կոմունիստական պարտիայի նոր միջոցառումները, որոնց նպատակն է բարձրացնել Սովետների դերը երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության գործում, ավելի ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների իրավունքներն ու ամրապնդել նրանց սուվերենությունը։

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիայի դրոշի ներքո, վստահորեն առաջ է ընթանում դեպի մարդկության լուսաշող ապագան՝ դեպի կոմունիզմը։

---

## ԲՈՑԱՇՈՒՆՉ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆԵՐԸ

(Ս. Սպանդարյանի ծննդյան 75-ամյակի առթիվ)

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Պատմ. գիտ. թեկնածու

Սուրեն Սպանդարյանը (Տիմոֆեյ) մեր պարտիայի լենինյան փառապանծ գվարդիայի ականավոր ներկայացուցիչներից էր, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, կոմունիստական գաղափարների փայլուն պրոպագանդիստ, ռևոլյուցիայի հանճար Վ. Ի. Լենինի նվիրված աշակերտներից ու զինակիցներից մեկը։ Նրա կարճատև, բայց հերոսական սխրանքներով հարուստ կյանքը բանվոր դասակարգի գործին անսահմանորեն նվիրվածությամբ ծառայելու մի սքանչելի ու պայծառ օրինակ է։

Սուրեն Սպանդարյանը ծնվել է 1882 թվականի դեկտեմբերի 15-ին, Թիֆլիսում։

1902 թվականին ավարտելով գիմնազիան, Ս. Սպանդարյանը մեկնում է Մոսկվա և ընդունվում Մոսկվայի համալսարանը,

որտեղ ուսանում է պատմա-ֆիլոլոգիական, ապա իրավաբանական ֆակուլտետներում։ Այստեղ նա կապվում է տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության հետ և ՌՍԴԲՊ-ի Մոսկվայի Կոմիտեի հանձնարարությամբ ընդհատակյա աշխատանքի ձեռնամուխ լինում Պրեսնիայի բանվորական շրջանում։

Ահա այստեղ էր, որ նա ավելի հիմնավորապես սկսեց ուսումնասիրել մարքսիզմը և մասնավորապես Վ. Ի. Լենինի աշխատությունները, որոնք նրան հնարավորություն տվին ճիշտ ըմբռնելու սոցիալ-դեմոկրատիայի ներսում եղած տարաձայնությունները և հաստատապես կանգնելու ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերի վրա։ Ծանոթանալով ՌՍԴԲՊ-ի 2-րդ համագումարի նյութերին՝ Ս. Սպանդարյանը անվերապահորեն հարեց բոլշևիկյան ֆրակցիային, նրա ղեկավար Լենինին և անմիջապես մասնակցեց մենշևիկների և մյուս օպորտունիստների դեմ բոլշևիկների ծավալած անհաշտ պայքարին։

1905—07 թ. թ. ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Ս. Սպանդարյանը ակտիվ մասնակցություն է ունենում ռևոլյուցիոն մարտերին։ Դեկտեմբերյան զինված ապստամբության ժամանակ զենքը ձեռ-



քին կռվում է Կրասնայա Պրեսնիայի բարիկադների վրա։

1906 թվականի սկզբներին Ս. Սպանդարյանը, որպես ռևոլյուցիայի մասնակից, վտարվեց Մոսկվայի համալսարանից, վերադարձավ Թիֆլիս և իրեն ամբողջովին նվիրեց պարտիական-աշխատանքին, դարձավ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ։ Տեսական խոր գիտելիքները, բոլշևիկյան սկզբունքայնությունը, հռետորական փայլուն ձիրքը, պրակտիկ ռևոլյուցիոն աշխատանքում ցուցաբերած անսահման կրքոտությունը նրան կարճ ժամանակում դարձրին աչքի ընկնող պարտիական գործիչ։

Կովկասյան պարտիական կենտրոնի հանձնարարությամբ նա բազմակողմանի գործունեություն ծավալեց Բաքվում, Թիֆլիսում և բանվորաշատ այլ վայրերում, մանավանդ հայաբնակ շրջանների աշխատավորության մեջ։ Ս. Սպանդարյանը Ստ. Շահումյանի հետ միասին ղեկավար մասնակցություն է ունենում 1906 թվականի օգոստոսի Ալավերդու բանվորների չորս ու կես հազարանոց մոտ մեկ ամիս տևող գործադուլին։

Ստ. Շահումյանի և Ս. Կասյանի հետ միասին 1906 թվականին Ս. Սպանդարյանը խմբագրում էր բոլշևիկյան «Կայծ», իսկ հե-

տո նաև «Նոր խոսք» թերթերը։ Այս թերթերի էջերում Սպանդարյանը հանդես է գալիս բազմաթիվ հոդվածներով, որոնք վերաբերում էին պարտիայի թեորիական, իդեոլոգիական, տակտիկական և կազմակերպական լենինյան սկզբունքների պաշտպանությանը։

Առանձնապես մեծ է Ս. Սպանդարյանի դերը Անդրկովկասում բուրժուական-նացիոնալիզմի և, մասնավորապես, հայկական նացիոնալիստների դեմ բոլշևիկների մղած անդուլ և անողոք պայքարում։ «Սոցիալիստ» դաշնակցությունը և Թուրք բանվորները», «Պրոֆեսիոնալ միությունները և Հ. Հ. դաշնակցությունը», և բազմաթիվ այլ հոդվածներում Ս. Սպանդարյանը բոլշևիկյան կրքոտությամբ մերկացնում է դաշնակների բուրժուական, շովինիստական և հակառևոլյուցիոն էությունը։ Նա դաշնակներին անվանում է «Հայ կյանքի ցեցեր», «Հայ բանվոր դասակարգի գիտակցությունը բթացնողներ» և այլն։

Իր հոդվածներում Ս. Սպանդարյանը բազմիցս անդրադարձել է նաև գյուղացիական շարժման նկատմամբ բոլշևիկյան տակտիկային, հստակ պատասխաններ տալով այն կենսական հարցերին, որոնք հուզում էին



բոլշևիկներին, հատկապես հայկական գյուղում։

1906 թվականի աշնան ամիսներին բոլշևիկների Անդրկովկասյան մարզային կենտրոնի հանձնարարությամբ Տիմոֆեյը ղեկավարում էր Ելիզավետպոլի (Կիրովաբադ) սոցիալ-դեմոկրատական պարտիական կազմակերպությունը։ Այստեղ նա կարողացավ աշխուժացնել պարտիական աշխատանքները, կարճ ժամանակամիջոցում գաղափարապես և կազմակերպորեն ամրացնել տեղական կազմակերպությունը և այն համախմբել Անդրկովկասյան բոլշևիկյան կենտրոնի շուրջը։ Սպանդարյանի անմիջական ղեկավարությամբ և մասնակցությամբ կարգավորվեց տեղի բոլշևիկյան տպարանի և թռուցիկների հրատարակման գործը։ Գումարվեց պարտիական կոնֆերանս, որն ընդունեց բոլշևիկյան որոշումներ։

1907 թվականի սկզբից Սպանդարյանը Բաքվում էր և Ս. Օրջոնիկիձեի, Ա. Ջափարիձեի, Ի. Ֆիոլետովի, Ա. Ծուլուկիձեի, Մ. Ազիզբեկովի, Ս. Ալլիլուևի, Վլ. Գասպարյանի («Սլավա»), Մ. Մելիքյանի («Դեդուշկա») և այլ ականավոր բոլշևիկների հետ միասին ղեկավարում էր նավթադործ բանվորների ռևոլյուցիոն պայքարը։

Սպանդարյանը Սև քաղաքի պարտիական կազմակերպիչն էր, բանվորների սիրելին։ Նա ելույթներ էր ունենում պարտիական ժողովներում, գլխավորում քաղաքական խմբակների պարապմունքները, կազմակերպված դիսկուսիաներում մերկացնում ու գաղափարապես ջախջախում մենշևիկներին, էսեռներին և դաշնակներին։ «Ընկ. Տիմոֆեյը,— գրում է իր հիշողություններում հին բոլշևիկ Ռ. Օկինշևիչը,—Բաքվա կազմակերպության և Բաքվա բանվորների մեջ համարվում էր մարքսիստական մտքի ամենաուժեղ և անփոխարինելի ղեկավարներից մեկը։ Նա խոշոր պատրաստության տեր էր իր մեծ իմացությունների հսկայական պաշարով և այդ իմացությունները նա կարողանում էր բանվորներին հաղորդել շատ պարզ ձևով, առանց սքողելու և մթագնելու այն։ Նրան «խայթող» կոչումն էին տվել, և իրոք նա այդպիսին էր մենշևիկների և տատանվողների հանդեպ...»։

Սպանդարյանը ակտիվ մասնակցություն է ունեցել «Բակինսկի պրոլետարի», «Գուդոկ», «Բակինսկի ռաբոչի» բոլշևիկյան թերթերի հրատարակման գործին։ Այդ թերթերի էջերում նա մերկացնում էր պրոլետարիատի դասակարգային թշնամիներին, բուրժուա-



նացիոնալիստներին և միաժամանակ աշխատավորական մասսաներին լուսավորում մարքսիստական-լենինյան գիտակցությամբ։ Այդ հոդվածների շարքում փոքր դեր չեն գրավում Սպանդարյանի գրաքննադատական հոդվածները, որոնք վերաբերվում են ինչպես համաշխարհային ու ռուսական, այնպես և հայ գրականության ու արվեստի թատրոնի և կրթության հարցերին։ Նա գտնում էր, որ գրողներն ու արվեստագետները պետք է քայլեն ժողովրդի կյանքին համընթաց։ Գրականությունը պետք է արտահայտի նրա կենսական շահերն ու ձգտումները։

1909 թվականի օգոստոսին Սպանդարյանը ձերբակալվում և աքսորվում է Դերբենտ։ Սակայն արդեն 1910 թվականի հունվարին նրան հաջողվում է փոխադրվել Թիֆլիս, անլեգալ բնակություն հաստատել այնտեղ և սևհարյուրակային ռեակցիայի ծանր պայմաններում նոր եռանդով մասնակցել Թիֆլիսի պարտիական կազմակերպության ռևոլյուցիոն-կազմակերպչական աշխատանքներին։ Պարտիական կյանքի դժվարին պայմաններում նա իր բոլոր ջանքերը գործադրում էր իրագործելու պարտիական անլեգալ կազմակերպությունների վերստեղծման ու ամրապնդման պատմական խնդիրը։







Սպանդարյանը համախմբում էր ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիային հավատարիմ բանվորներին, ստեղծում անլեգալ բջիջներ, կոփում նրանց գաղափարապես և կազմակերպորեն։ Միաժամանակ նոր թափ է ստանում նրա ժուռնալիստական և հրապարակախոսական գործունեությունը, որը նրա պարտիական աշխատանքի կարևորագույն մասն էր կազմում։ Փայլուն կերպով օգտագործելով լեգալ մամուլի («Լիստոկ-կոպեյկա», «Նովայա ռեչ», «Կուրիեր-կոպեյկա» և այլ թերթեր) էջերը, Սպանդարյանը իր նպատակասլաց հոդվածներում մոբիլիզացնում էր բանվորներին խտացնելու իրենց շարքերը և նոր ավյունով պայքարելու ցարիզմի դեմ։

1911 թվականի աշնանը, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ե. Ստասովայի, Ստ. Շահումյանի, Վ. Շվեյցերի և այլոց հետ միասին, Սուրեն Սպանդարյանը ակտիվ մասնակցություն ունեցավ բոլշևիկյան պարտիայի 6-րդ կոնֆերանսի նախապատրաստման աշխատանքներին։ Թիֆլիսի կազմակերպությունը համապարտիական կոնֆերանսի դելեգատ ընտրեց Սերգո Օրջոնիկիձեին, իսկ Բաքվինը՝ Սուրեն Սպանդարյանին։ Շուտով Օրջոնիկիձեն մեկնեց Փարիզ Վ. Ի. Լենինին ին-



ֆորմացիա տալու կոնֆերանսի նախապատրաստման աշխատանքների ընթացքի մասին, իսկ Սպանդարյանին հանձնարարվեց շրջագայել Ռուսաստանի մի շարք բանվորական կենտրոնները՝ նախապատրաստելու և ղեկավարելու դելեգատների ընտրությունը և ուղարկումը արտասահմանում տեղի ունենալիք համապարտիական կոնֆերանս։ Նա եղավ Անդրկովկասի մի շարք քաղաքներում, ապա Մոսկվայում, Պետերբուրգում և Ռիգայում։

Վեցերորդ համառուսաստանյան պարտիական կոնֆերանսը տեղի ունեցավ 1912 թվականի հունվարին Պրագայում։ Կոնֆերանսի նիստերը ղեկավարում էր Վ. Ի. Լենինը։ Այստեղ ջերմ մտերմական հարաբերություններ հաստատվեցին Լենինի և Սպանդարյանի միջև։ Սպանդարյանը ակտիվ մասնակցություն ունեցավ կոնֆերանսում քննարկված բոլոր հարցերին, զեկուցեց պարտիական աշխատանքների վիճակի մասին Բաքվում, Թիֆլիսում, Սուխումում, Բաթումում, Քութայիսում, Փոթիում և Գորիում։ Կոնֆերանսի ընտրած բոլշևիկյան պարտիայի Կենտկոմի կազմում Վ. Ի. Լենինի, Զ. Գոլոշչեկինի, Գ. Օրջոնիկիձեի և ուրիշների հետ միասին ընտրվեց նաև Ս. Սպանդար-

*յանը։ Նա ընտրվեց նաև պարտիայի Կենտկոմի Ռուսական Բյուրոյի կազմում։*

*Պարտիայի 6-րդ կոնֆերանսի որոշումներով զինված՝ Սպանդարյանը նոր թափով ու եռանդով աշխատանք ծավալեց կոնֆերանսի կողմից առաջադրված մեծ, պատմական խնդիրները կենսագործելու համար։ Կոնֆերանսից հետո նա Վ. Ի. Լենինի և Ն. Պոլետաևի հետ միասին եղավ Բեռլինում, ապա վերադարձավ Ռուսաստան և ձեռնամուխ եղավ Պրագայի կոնֆերանսի որոշումների մասսայականացմանը երկրի տարբեր քաղաքներում։ Սակայն, շուտով, 1912 թվականի մարտի 18-ին, Բաքվի Բալախանի բանվորական թաղամասում, Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին զեկուցելիս Սպանդարյանը պրովոկատորի մատնությամբ ձերբակալվեց։ Երկարատև հարցաքննություններից ու Մետեխի բանտում պահվելուց հետո, 1913 թվականի սեպտեմբերին նա շղթայակապ աքսորվեց Սիբիր, սկզբում Կրասնոյարսկ, ապա Տուրուխանյան երկրամասի Մոնաստիրսկոյե գյուղը։*

*Աքսորի անտանելի պայմանները չէին վհատեցնում աննկուն բոլշևիկին։ «Թանկագին ընկերներ։ Ձեզ ամենաբոցավառ ողջույն ենք հղում մեր սառն երկրներից։ Մենք*



*ոգով արի ենք և նույնն ենք ցանկանում Ձեզ»,— գրում էր նա Լենինին և Կրուպսկայային ուղղած իր նամակներից մեկում։ Նա հավաստիացնում էր Ստ. Շահումյանին, որ «Շատ չի անցնի երևի, ընկեր, մենք նորից կհանդիպենք միմյանց և կողք-կողքի կշարունակենք պայքարել մեր սիրած գործի համար»... Բայց ավա՜ղ, բանտն ու աքսորը քայքայեցին անվեհեր ռևոլյուցիոների առողջությունը։ 1916 թ. սեպտեմբերի 11 (24)-ին կտրվեց 34-ամյա Սպանդարյանի կյանքի թելը։*

*Վ. Ի. Լենինը բոլշևիկյան պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ Դեմոկրատ» թերթում հատուկ մահախոսական զետեղեց նրա պայծառ հիշատակին։ Այնտեղ ասված էր. «...Հանգուցյալը 15 տարուց ավելի է, ինչ ՌՍԴԲՊ անդամ էր, աշխատելով իբրև աչքի ընկնող ագիտատոր, գլխավորապես Կովկասում։ Սակայն ընկեր Տիմոֆեյը քաջ ծանոթ էր նաև բազմաթիվ ռուս ընկերների, որպես համապարտիական կոնֆերանսների և խորհրդակցությունների դելեգատ։*

*Կոնտրռևոլյուցիայի և պարտիական կյանքի քայքայման տարիներին ընկ. Տիմոֆեյն իր առույգությունը չկորցրեց։*

*Նա մնաց կանգնած իր դիրքում և միայն ուժեղացրեց իր աշխատանքը։ Նա եռանդուն մասնակցություն ունեցավ ինչպես 1912 թ. համապարտիական կոնֆերանսի նախապատրաստման աշխատանքներին, այնպես էլ բուն կոնֆերանսին։ Ընտրվելով նոր Կենտկոմի անդամ՝ Սպանդարյանը Ռուսաստանում կատարած իր աշխատանքով հսկայական ծառայություններ մատուցեց այդ հիմնարկությանը։ Նա մասնակցում էր Կենտկոմի ռուսական տպարանի կազմակերպման գործին, ընտրական պլատֆորմի և Կենտկոմի մի շարք կոչերի հրատարակությանը։*

*... Արդեն պատերազմի ժամանակ մենք նամակներ ստացանք ընկեր Տիմոֆեյից, որոնցից պարզ էր արդեն, որ նա հավատարիմ է մնացել ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի լավագույն տրադիցիաներին, ոչ մի րոպե չտատանվելով ինտերնացիոնալիզմի դիրքերից»։*

*Բոցաշունչ բոլշևիկին չվիճակվեց տեսնել սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը։ Բայց այն, ինչ կատարեց Սպանդարյանը բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների համար անմար է մնում սովետական ժողովրդի սրտում, նրան ոգեշնչելով նոր սխրանքների։*

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԱՍԱՄԲԼԵԱՆ

### Ֆ. ԻՎԱՆՈՎ

*Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսը, որը տեղի ունեցավ սույն թվականի հոկտեմբերի 4-ից մինչև 15-ը, Լայպցիգ քաղաքում (Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա), աչքի ընկնող տեղ կգրավի միջազգային արհմիութենական շարժման մեջ։*

*Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսը հանդիսացավ աշխատավորների ամենալայն և ամենաներկայացուցչական ժողովը համաշխարհային արհմիութենական շարժման ամբողջ պատմության մեջ։ Կոնգրեսը գումարվեց ամենամասսայական միջազգային արհմիութենական կազմակերպության՝ Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի նախաձեռնությամբ։ Բայց նրա աշխատանքներին մասնակցում էին ոչ միայն ԱՀՖ-ի մեջ մտնող արհմիությունները։ Իրենց ներկայացուցիչներին կոնգրես, Լայպցիգ էին*

ուղարկել շատ արհմիություններ և ազգային արհմիութենական կենտրոններ, որոնք հարում են միջազգային այլ արհմիավորումների, ինչպես նաև ազգային ավտոնոմ արհմիություններ։ Դրանց թվում էին այնպիսի խոշոր արհմիութենական կազմակերպություններ, ինչպես Ճապոնիայի արհմիությունների Գլխավոր խորհուրդը, Չիլիի Աշխատավորության միասնական կոնֆեդերացիան, Հարավսլավիայի Արհմիությունների միությունը, Արաբական արհմիությունների միջազգային կոնֆեդերացիան և ուրիշներ։ Այդ կազմակերպություններն իրենց շարքերում միավորում են արհմիությունների մոտ 13 միլիոն անդամ։

Արհմիությունների Լայպցիգի կոնգրեսին մասնակցում էր ընդամենը 806 պատգամավոր և դիտորդ, 80 երկրների 190 ազգային և ռեգիոնալ արհմիութենական կազմակերպություններից։ Նրանք ներկայացնում էին արհմիությունների ավելի քան 105 միլիոն անդամ։ Կոնգրեսի մասնակիցները բարեկամական մթնոլորտում կարողացան ազատ կերպով մտքեր փոխանակել բոլոր երկրների աշխատավոր լայն մասսաներին հուզող կարևոր հարցերի շուրջը։

Արհմիությունների 4-րդ Համաշխարհային



կոնգրեսի օրակարգի մեջ էին մտնում միջազգային արհմիութենական շարժման առավել ակտուալ հարցերը։ Կոնգրեսը բազմակողմանիորեն քննարկեց «Ամբողջ աշխարհում արհմիությունների գործունեության և աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, նրանց տնտեսական, սոցիալական և դեմոկրատական իրավունքների, զինաթափման, խաղաղության և ազգային անկախության համար մղվող պայքարում միջազգային արհմիութենական շարժման եղբայրական կապերը և միասնությունը զարգացնելու մասին» հարցը։ Այդ հարցի վերաբերյալ զեկուցումը, որ տվեց ԱՀՖ-ի Գլխավոր քարտուղար Լուի Սայանը, պատգամավորների ելույթները և կոնգրեսի ընդունած որոշումները հանրագումարի բերեցին և նշեցին համաշխարհային արհմիութենական շարժման առավել կարևոր պրոբլեմների լուծման համար արհմիությունների պայքարի կոնկրետ խնդիրները։

Արհմիությունների 3-րդ Համաշխարհային կոնգրեսից հետո անցած չորս տարիների ընթացքում միջազգային արհմիութենական շարժման մեջ տեղի են ունեցել մեծ փոփոխություններ։ Զգալիորեն բարձրացել է բանվոր դասակարգի կազմակերպվածությունը և

քաղաքական գիտակցությունը։ Կապիտալի երկրներում իրենց կենսական կարիքների, տնտեսական ու քաղաքական պահանջների բավարարման համար աշխատավորների մղած դասակարգային պայքարը ծավալվում է ընդլայնվող, ավելի աճող մասշտաբներով։ Այդ մասին պերճախոս կերպով խոսում է գործադուլային շարժման թափը վերջին տարիներում։ Ոչ լրիվ տվյալների համաձայն, միայն 28 կապիտալիստական երկրներում 1954—1955 թվականներին գործադուլային օրերի քանակը 43 միլիոնից աճել է մինչև 60,2 միլիոնի։ 1956—1957 թվականներին աշխատավորների գործադուլային պայքարն է՛լ ավելի է ուժեղացել։ Այդ տարիներին մասսայական համառ գործադուլներ տեղի ունեցան Արևմտյան Գերմանիայում, Անգլիայում և Ճապոնիայում և ուրիշ շատ կապիտալիստական երկրներում։

Արհմիությունների թվի արագ աճը բնորոշ է հետպատերազմյան տարիներին։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ամբողջ աշխարհում հաշվվում էր արհմիությունների մոտավորապես 45 միլիոն անդամ, այժմ արհմիություններում միավորված են ավելի քան 160 միլիոն աշխատավորներ: Դժվար չէ պատկերացնել, թե որքան կավե-



լանար կապիտալի դեմ աշխատավորների պայքարի ուժը, եթե այդ բազմամիլիոն արհմիութենական բանակը գործեր համերաշխ, համախմբված և միասնական։

Ցավոք սրտի, միջազգային արհմիութենական շարժումը պառակտված է։ 1949 թվականին աջ պարագլուխների ղեկավարած ԱՄՆ-ի և Անգլիայի արհմիությունները դուրս եկան Արհմիությունների Համաշխարհային Ֆեդերացիայից՝ այդ միասնական միջազգային արհմիութենական կենտրոնից, որը ստեղծվել էր երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Դրանից անմիջապես հետո պառակտիչները նոր արհմիութենական կենտրոն ստեղծեցին՝ այսպես կոչված Ազատ արհմիությունների միջազգային կոնֆեդերացիան (ԱԱՄԿ)։ Բացի դրանից, գոյություն ունի ևս մեկ խոշոր միջազգային արհմիութենական միավորում՝ Քրիստոնեական արհմիությունների միջազգային կոնֆեդերացիան (ՔԱՄԿ)։

ԱՀՖ-ն եղել և մնում է արհմիությունների առաջին իրոք համաշխարհային միավորումը։ Նրա մեջ մտնում են սոցիալիստական պետությունների, զարգացած կապիտալիստական շատ երկրների, Ասիայի ու Աֆրիկայի անկախ պետությունների, գաղութային ու

կախյալ երկրների արհմիությունները։ Շնորհիվ այն բանի, որ ԱՀՖ-ը կայուն կերպով է պաշտպանում աշխատավորների դասակարգային շահերը, նրա ազդեցությունն ու քանակն ավելանում են տարեցտարի։ ԱՀՖ-ի մարտական ծրագիրը հավանության է արժանանում լայն մասսաների մոտ, նրա լոզունգների ներքո ընթանում է արհմիությունների մեջ կազմակերպված աշխատանքի մարդկանց ճնշող մեծամասնությունը։ Ներկայումս ԱՀՖ-ն իր շարքերում միավորում է արհմիությունների ավելի քան 92 միլիոն անդամ, այսինքն՝ շատ ավելի, քան մնացած բոլոր միջազգային արհմիութենական կենտրոնները։

ԱՀՖ-ն մի շարք անգամ դիմել է ԱԱՄԿ-ին և ՔԱՄԿ-ին համառորեն առաջարկելով հանդիպել և համատեղ պայքարել աշխատավորների անհետաձգելի և կենսական պահանջների համար։ Սակայն այդ երկու միջազգային արհմիութենական միավորումների պարագլուխները, անտեսելով նրանց անդամների շահերը, համառորեն մերժում են միասնական գործողությունների մասին բոլոր առաջարկությունները։

Մինչդեռ միջազգային արհմիութենական շարժման միասնության պրոբլեմը ստացել է առանձնապես կարևոր նշանակություն։



Վերջին տարիներում կապիտալիզմի երկրներում կտրուկ կերպով ուժեղացել է մոնոպոլիաների հարձակումը բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության վրա։

Աշխատավորների կենսամակարդակի և նրանց իրավունքների վրա կատարվող հարձակման մեջ մոնոպոլիաները օգտագործում են արհմիութենական շարժման պառակտվածությունը։ Նրանք իրենց դասակարգային նպատակներին հասնում են արհմիություններում եղած բուրժուազիայի գործակալության օգնությամբ։

Կապիտալիստական մոնոպոլիաների ուժեղ հարձակմանը դիմադրելու համար այժմ, քան երբեք, անհրաժեշտ է հանդես գալ միասնական ճակատով՝ և՛ ազգային, և՛ միջազգային մասշտաբով։ Դրա համար ներկայումս կան բարենպաստ պայմաններ։

Այժմ ըստ էության միանման պահանջներ են ներկայացնում (ռեալ աշխատավարձի բարձրացում, հավասար աշխատանքի համար հավասար վարձատրություն, պայքար գործազրկության դեմ և այլն) կապիտալիստական երկրների բոլոր արհմիությունները և գոյություն ունեցող բոլոր երեք միջազգային արհմիութենական միավորումները։ Դա լավ հիմք է ստեղծում զանազան

արհմիութենական կազմակերպությունների միանական գործողությունների համար։ Արհմիութենական գործողությունների միասնության համար իրական հիմք կարող է ծառայել նոր համաշխարհային պատերազմի վտանգի, սպառազինությունների մրցավազքի դեմ, ատոմային և ջրածնային զենքի արգելման, ամբողջ աշխարհում կայուն խաղաղության համար մղվող պայքարը։

Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսը վիթխարի ուշադրություն դարձրեց արհմիությունների միասնության պրոբլեմին։ Նա ԱՀՖ-ի և նրա մեջ մտնող բոլոր արհմիությունների առջև որպես կենտրոնական, անհետաձգելի և մարտական խնդիր դրեց՝ հնարավորություններ և ուղիներ փնտրել տեղական, ազգային և միջազգային մասշտաբներով արհմիությունների գործողությունների միասնության համար:

Կոնգրեսը միահամուռ կերպով ընդունեց ընդհանուր բանաձև, բաց նամակ՝ ուղղված բոլոր միջազգային կազմակերպություններին և բոլոր ազգային ու տեղական արհմիութենական կազմակերպություններին, որոնք չեն մտնում ԱՀՖ-ի մեջ, և Մանիֆեստ՝ ուղղված ամբողջ աշխարհի տղամարդ ու կին աշխատավորներին։ Այդ փաստաթղթերում ոչ



միայն հիմնավորված է արհմիութենական շարժման միասնության անհրաժեշտությունը, այլև թվարկված են կենսականորեն կարևոր կոնկրետ պահանջները, որոնք ընդհանուր են տարբեր ուղղությունների արհմիությունների համար։ Կոնգրեսը բոլոր արհմիութենական կազմակերպություններին կոչ արեց իրար միջև կոնսուլտացիաներ սկսել գործողությունների միմյանց համար ընդունելի մինիմում-ծրագիր մշակելու համար։ Ներքևից վերև ամբողջ արհմիութենական շարժման կողմից քննարկված այդպիսի ծրագիրը կարող էր հիմք հանդիսանալ համաշխարհային արհմիութենական շարժման հնարավոր միավորման համար՝ աշխատավորների արմատական շահերի, խաղաղության, հացի և ազատության համար մղվող պայքարում։

Լայպցիգի կոնգրեսի աշխատանքներում կարևոր տեղ գրավեց գաղութարարության դեմ մղվող պայքարում արհմիությունների խնդիրների մասին հարցը։ Այս հարցի քննարկումը մի ավելորդ անգամ ապացուցեց, որ ԱՀՖ-ը և բոլոր առաջադեմ արհմիությունները մշտապես պաշտպանում են ազատության և ազգային անկախության համար գաղութային երկրների ժողովուրդների պայքարը։

Այսպիսի դիրքորոշումը, որը հիմնված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, գաղութային և կախյալ երկրների աշխատավորների մեջ առաջ է բերել ջերմ երախտագիտության զգացմունք ԱՀՖ-ի նկատմամբ։ Կոնգրեսում ելույթ ունեցած Սև Աֆրիկայի, Արաբական Արևելքի, Ասիայի և Լատինական Ամերիկայի արհմիությունների ներկայացուցիչները ջերմ շնորհակալություն հայտնեցին Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիային և նրան հարող արհմիութենական կենտրոններին գաղութարարության դեմ ճնշված ժողովուրդների պայքարը պաշտպանելու համար։ Կոնգրեսում նշվեց, որ ամենուրեք Ասիայի և Աֆրիկայի երկրներում բուռն կերպով աճում է արհմիութենական շարժումը։ Այսպես, օրինակ, 1957 թվականին Աֆրիկայում կազմակերպվեց նոր մասսայական արհմիութենական կազմակերպություն՝ Սև Աֆրիկայի աշխատավորության ընդհանուր միավորումը։

1956 թվականին ստեղծվել է Արաբական արհմիությունների միջազգային կոնֆեդերացիան, որը միավորում է Եգիպտոսի, Սիրիայի, Լիբանանի, Սուդանի, Լիբիայի և մյուս արաբական երկրների մոտ 6 միլիոն աշխատավորներ։



Վերջին տարիներում զգալիորեն աճել է անկախ պետական գոյության ուղին դուրս եկած երկրների արհմիությունների թիվը։ Այսպես, Հնդկաստանում վերջին հինգ տարիներին արհմիությունների անդամների թիվը աճել է մեկ միլիոն մարդով, Ինդոնեզիայում՝ ավելի քան 2,3 միլիոն մարդով։ Իրենց ազգային ազատությանը հասած երկրների արհմիությունները ակտիվորեն մասնակցում են այդ երկրների ամրապնդմանն ուղղված բոլոր միջոցառումներին, իսկ գաղութային երկրների արհմիությունները վճռականորեն պայքարում են գաղութարարների լուծը տապալելու համար։

Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսը գաղութային հարցի մասին ընդունեց մի շարք բանաձևեր։ Ալժիրի հարցի, Կամերունի, Գոայի ու Արևմտյան Իրիանի, Կիպրոսի մասին բանաձևերում, Հարավային Աֆրիկայի մասին դեկլարացիայում կոնգրեսը համերաշխություն հայտնեց գաղութային լծի դեմ, ազատության ու անկախության համար այդ երկրների մղած պայքարին։

Կոնգրեսը արհմիութենական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց ամեն կերպ և սիստեմատիկաբար պաշտպանել գաղու-

թային և կախյալ երկրների ժողովուրդներին ազգային ազատության համար մղած նրանց պայքարում։ Միաժամանակ կոնգրեսը բոլոր արհմիութենական կազմակերպություններին կոչ արեց օգնություն ցույց տալ այն երկրների ժողովուրդների ազգային անկախության ամրապնդմանը, որոնք վերջերս կանգնել են ինքնուրույն զարգացման ուղու վրա։

Բոլոր հարցերի քննարկման ժամանակ էլ Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսի ուշադրության կենտրոնում էին գտնվում հանուն խաղաղության, իմպերիալիստների կողմից նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման դեմ պայքարի հարցերը։ Կոնգրեսի պատգամավորները միաձայն ընդունեցին խաղաղության, զինաթափման և մասսայական ոչնչացման զենքն արգելելու մասին Դեկլարացիան։ Կոնգրեսը մեծ ոգևորությամբ հավանություն տվեց Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների խաղաղասեր դիրքորոշմանը և ԱՄՆ-ի ու Անգլիայի կառավարություններին կոչ արեց ընդունել ՍՍՌՄ-ի առաջարկությունները ատոմային զենքի արգելման և նրա փորձարկումները դադարեցնելու մասին։



Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսը ցուցադրեց ամբողջ աշխարհի աշխատավորության վիթխարի սերը Սովետական Միության նկատմամբ, որն ընթանում է խաղաղության և ամբողջ մարդկության լուսավոր ապագայի համար մղվող պայքարի ավանգարդում։

Սովետական արհմիությունները, որոնք իրենց շարքերում միավորում են մեր երկրի մոտ 47 միլիոն բանվորներ և ծառայողներ, հանդիսանում են Արհմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի բաղկացուցիչ մասը։ Նրանք ակտիվորեն մասնակցել են այդ միջազգային արհմիութենական միավորման ստեղծմանը և մշտապես պաշտպանել են ԱՀՖ-ն՝ նրա ամբողջ գործունեության մեջ, որն ուղղված է աշխատավորների շահերի պաշտպանությանը։ Մեր երկրի արհմիությունները բոլոր ուժերը կներդնեն այն բանի համար, որպեսզի հաջողությամբ կենսագործվեն Արհմիությունների 4-րդ Համաշխարհային կոնգրեսի որոշումները։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ռեսպուբլիկական ցուցահանդեսը)

*Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի առթիվ Երևանի Կուլտուրայի տան ընդարձակ սրահներում բացվել է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, արվեստի ու գրականության նվաճումները պատկերող ճոխ ցուցահանդես։ Ամեն մի այցելու փաստական նյութերի և բազմաթիվ իլյուստրացիաների հիման վրա համոզվում է թե ինչպիսի ծաղկման է հասել մեր ռեսպուբլիկան։*

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանը ագրարային հետամնաց երկրից դարձել է առաջավոր, ինդուստրիալ-ագրարային երկիր։ Մինչև սովետական կարգերի հաստատումը մեր ռեսպուբլիկան չուներ քիչ թե շատ նշանակալից արդյունաբերություն։ Այժմ նա ունի զարգացած էներգետիկ, քիմիական, լեռնային, մեքենաշինական, շինանյութերի, տեքստիլ-տրիկոտաժի, սննդի*



*արդյունաբերություն և բազմաթիվ այլ արտադրական ճյուղեր։ Սովետական Հայաստանը այսօր արտադրում է պղինձ, ալյումին, մետաղահատ դազգյահներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, հիդրոտուրբիններ, էլեկտրաճշգրիտ գործիքներ, կարբիտ, ցեմենտ, կաբել, ավտոդողեր և ուրիշ շատ տեսակի արտադրանք։*

*Մեր ռեսպուբլիկայում աննախընթաց զարգացման է հասել էլեկտրաարդյունաբերությունը։ Երկիրը պատվել է մեծ և փոքր էլեկտրակայանների ցանցով։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արտադրվել է 450 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա։ Ռեսպուբլիկայի ամեն մի բնակչին ավելի շատ էլեկտրաէներգիա է ընկնում, քան կապիտալիստական այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Հոլանդիան, Իտալիան, Ճապոնիան։ Այժմ մենք երկու անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա ենք արտադրում, քան Թուրքիան։*

*Ցուցահանդեսում առանձնահատուկ ուշադրություն է գրավում մեքենաշինության արդյունաբերության արտադրանքը։ 1913 թվականի համեմատությամբ մեքենաշինության արտադրանքը աճել է 328 անգամ։ Երևանի*

Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրոգործարանը ներկայումս արտադրում է բազմաթիվ տարբեր մարկաների ու մեծության գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ։ Վերջին շրջանում գործարանը արտադրում է նաև ղեկավարման վահաններ, սինխրոն և ուղղահայաց մեծ ուժի գեներատորներ։ Հայէլեկտրոգործարանի արտադրանքը ոչ միայն գնում է Սովետական Միության տարբեր քաղաքներն ու միութենական ռեսպուբլիկաները, այլև արտասահմանյան շատ երկրներ՝ Գերմանիա, Լեհաստան, Մեքսիկա, Չինաստան, Հնդկաստան, Ավղանստան, Ինդոնեզիա, Պակիստան, Իրան, Չեխոսլովակիա, Եգիպտոս և այլն։ Այստեղ ցուցադրված են նաև Ձերժինսկու անվան գործարանի արտադրած հաստոցները, Երևանի էլեկտրատեխնիկական, էլեկտրաճշգրիտ գործիքների, Կաբելի, մեխանիկական, Լենինականի և Հոկտեմբերյանի մեխանիկական գործարանների արտադրության շատ նմուշներ։ Լենինականի Հեծանիվի գործարանը իր արտադրանքով մասնակցել է միջազգային շատ ցուցահանդեսների. օրինակ. Հելսինկիի, Պոզնանի, Լայպցիգի, Բրյուսելի, Վիեննայի, Բուենոս-Այրեսի, Պեկինի և այլն։



Ցուցահանդեսում զգալի տեղ են գրավում Հայաստանի գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության արտադրանքի բազմաթիվ նմուշները։ Ցուցադրված են պղնձաքարի, մոլիբդենի, երկաթահանքի, ոսկու, մարմարի և այլ օգտակար հանածոների տեսակներ, «ԿԱՆԱԶ» գործարանի արտադրած ալյումինը, Ալավերդու սև և մաքուր պղնձի ձուլվածքները։

Ռեսպուբլիկայում լայն զարգացում է ստացել քիմիական արդյունաբերությունը որի արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականին ավելացել է 2,7 անգամ։ Այստեղ ցուցադրված են Հայաստանի շինանյութերի ավելի քան 130 տեսակներ, ինչպես ցեմենտ, տուֆ, գրանիտ, բազալտ, մարմար, պեմզա, շիֆեր և բազմաթիվ այլ շինանյութեր։ Ծանր արդյունաբերության զարգացումը լայն պայմաններ է ստեղծել թեթև արդյունաբերության առաջխաղացման համար։ 1956 թվականին ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության արտադրանքը՝ 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 65 անգամ, սննդարդյունաբերությունը՝ 18 անգամ։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայում արտադրվում է ավելի քան 400 տեսակի արտադրանք։ Այցելուին

հիացմունք են պատճառում Վ. Ի. Լենինի անվան մետաքսա-գործվածքային ֆաբրիկայի, Երևանի մահուդի ֆաբրիկայի, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի գեղեցիկ ու նուրբ արտադրանքը, կոշիկի ֆաբրիկաների, կաշվե գալանտերեայի և կաշվի գործարանի արտադրանքների նմուշները։ Մետաքսա-գործվածքային գործարանի արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ աճել է երեք ու կես անգամ, Լենինականի տեքստիլ կոմբինատի բամբակի գործվածքներինը՝ 2 անգամ, մանվածքինը՝ 3 անգամ, կոշիկի արտադրանքը՝ 6 անդամ, տրիկոտաժեղենինը՝ 13, բրդյա գործվածքներինը՝ 6 անգամ։ Ռեսպուբլիկայի սննդարդյունաբերությանը նվիրված բաժնում ցուցադրված են մեր գինիների ու կոնյակների բազմաթիվ տեսակները, հանքային ջրերը, մրգերից ու բանջարեղենից պատրաստված պահածոները, կարամելի ֆաբրիկայի, ձեթ-օճառ կոմբինատի արտադրանքի նմուշները։ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության արտադրանքը։

Ցուցահանդեսում պատշաճ տեղ է գրավում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտում ձեռք բերած նվաճումները։ Կոլխոզային աշխատավորության եռանդուն



ջանքերի և սովետական ագրոնոմիական գիտության շնորհիվ ստացվել են հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների, կերաբույսերի նոր, առավել բերքատու սորտեր։ Մեծ հետաքրքրությամբ են դիտվում «Եղվարդի 4», «Կարմիր սլֆահատ», «Սպիտակահատ», «Ուկրաինկա», «Գալգալոս», «Նոր կոնդիկ» սորտերը։ Առանձնապես զգալի է անասնաբուծության գծով վերջին շրջանում ձեռք բերած նվաճումները։ Եթե ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատավորությունը 1940 թվականին անասնապահությունից ստացել է 41 միլիոն 542 հազար ռուբլու եկամուտ, ապա 1956 թվականին անասունների ցեղայնությունը բարելավելու և մթերատվությունը բարձրացնելու շնորհիվ ստացել է 264 միլիոն ռուբլու եկամուտ։ Խոշոր զարգացում է ստացել բամբակագործությունը։ Եթե 1919 թվականին բամբակի պլանտացիաների ընդհանուր տարածությունը հազիվ 600 հեկտար էր և մեկ հեկտարից ստացվում էր 5 ցենտներից մի քիչ ավելի բերք, ապա 1956 թվականին բամբակի տարածությունը հասավ 16 հազար հեկտարի, իսկ մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց ավելի քան 18 ցենտներ։ Ռեսպուբլիկայում սովետական իշխանության տարիներին

զգալի զարգացում է ստացել խաղողագործությունն ու պտղաբուծությունը, որոնք մեծ եկամուտներ են տալիս գյուղի աշխատավորությանը։

Հայաստանի աշխատավորները, ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական օրգանների գլխավորությամբ լուրջ աշխատանքներ են կատարել ոռոգման վերաբերյալ մեծ Լենինի պատգամները կենսագործելու ուղղությամբ։ Կառուցված բազմաթիվ մեծ ու խոշոր ջրանցքները տասնյակ հազարավոր հեկտար հողեր են ոռոգում։ Եթե 1913 թվականին ոռոգելի տարածությունները կազմում էին 9 հազար 700 հեկտար, ապա 1940 թվականին այն հասավ ավելի քան 186 հազարի, իսկ 1957 թվականին՝ մոտ 216 հազար հեկտարի։ Տարեցտարի աճում են ոռոգման համար ծախսվող գումարները։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության և Սովետական կառավարության հոգատարության շնորհիվ, զնալով ծաղկում ու բարգավաճում է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, գրականությունն ու արվեստը։

1914 թվականին Հայաստանում կար ընդամենը 459 դպրոց՝ 34.700 աշակերտով և



1100 ուսուցչով։ 1956—57 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում են 1197 դպրոց, որտեղ սովորում են մոտ 274.600 աշակերտ և աշխատում ավելի քան 18.600 ուսուցիչ։ Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ներկայումս մենք ունենք 12 բուհ՝ 20 հազարից ավելի սովորողներով։ Մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր հազար մարդուն ընկնում է 45 անգամ ավելի սովորող, քան Իրանում, 11 անգամ ավելի, քան Թուրքիայում, 4 անգամ ավելի, քան Ֆրանսիայում։

Ներկայումս մեր ռեսպուբլիկայում գործում են բազմաթիվ թատրոններ և Հայֆիլհարմոնիայի գեղարվեստական կոլեկտիվներ։ Զգալի առաջխաղացում ունի կինոֆիլմերի սեփական արտադրությունը։ 1924—1957 թվականների ընթացքում, Հայֆիլմը բաց է թողել 69 գեղարվեստական, 99 դոկումենտալ, 23 հանրամատչելի ֆիլմեր և ավելի քան հազար կինոժուռնալներ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանը ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցով։ Եթե 1913 թվականին ամբողջ Հայաստանում գործում էր 13 գրադարան, ապա 1956 թվականին

*գործում էր 1.662 գրադարան, 1.175 ակումբ, 20 թանգարան, 378 կինոսարքավորում, 52 կուլտուրայի տուն և այլն։*

*Խոշոր նվաճումներ են ձեռք բերել ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիան՝ իր բազմաթիվ ինստիտուտներով և գիտահետազոտական հիմնարկություններով։*

*Հայաստանում 1920 թվականին հրատարակվել էր ընդամենը 10 անուն գիրք, այն էլ շատ աննշան տիրաժով։ 1957 թվականին տպագրվել է 473 անուն գիրք, ավելի քան 3 միլիոն 675 հազար տիրաժով։ Ցուցահանդեսում մի ամբողջ սենյակ է նվիրված սովետահայ գրականությանը և գրողներին։ Բացի այդ, այնտեղ ցուցադրված են հայ պարբերական մամուլի՝ ժուռնալների ու թերթերի բազմաթիվ օրինակներ։*

*Միաժամանակ ցուցահանդեսում լայն տեղ է հատկացված սովետահայ ճարտարապետությանը, ռեսպուբլիկայի ժողովրդական առողջապահության, ֆիզկուլտուրայի զարգացման, կապի, բնակչության կոմունալ միջոցների սպասարկման հարցերին։*

---



# ԾԱՂԿՈՒՄ ԵՎ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՍՀՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

*Մեր մեծ երկրի եղբայրական ժողովուրդները մեծագույն հաջողություններով նշանավորեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը։ Միութենական բոլոր ռեսպուբլիկաներում ստեղծվել է ժամանակակից տեխնիկայով զինված հուժկու արդյունաբերություն։ Օրեցօր ծաղկում և բարգավաճում է Սովետական Միության արդյունաբերությունը։ Ահա թվեր ու փաստեր այդ մասին։*

★ *Արդյունաբերական արտադրանքի արտադրության բացարձակ չափերով Սովետական Միությունը արդեն վաղուց շատ առաջ է անցել Եվրոպայի խոշորագույն կապիտալիստական երկրներից՝ Անգլիայից, Ֆրանսիայից, Արևմտյան Գերմանիայից։*

★ *Մեր երկրում հաջողությամբ լուծվում է բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ պատմական կարճ ժամկետում կապիտալիստական առավել զարգացած երկրներին, այդ թվում նաև ԱՄՆ-ին հասնելու և անցնելու խնդիրը։*

★ *Այժմ մեր երկիրն արտադրում է ավելի շատ*

չուգուն, քան Անգլիան, Ֆրանսիան ու Բելգիան միասին վերցրած, այնինչ, 1913 թվականին մեր երկիրն արտադրել է Անգլիայից 2,5 անգամ քիչ և Ֆրանսիայից էլ քիչ չուգուն։ Այս տարի ՍՍՌՄ-ում ձուլվել է ավելի քան 37 միլիոն տոննա չուգուն։

★ ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումը 1957 թվականին հասել է 51 միլիոն տոննայի, 1913 թվականի 4,2 միլիոն տոննայի փոխարեն։

★ Այժմ ՍՍՌՄ-ն ածխի հանույթով գրավում է Եվրոպայում առաջին, իսկ աշխարհում երկրորդ տեղը։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում արդյունահանվել է 462 միլիոն տոննա ածուխ, այնինչ 1913 թվականին ածխի հանույթը եղել է ընդամենը 29,1 միլիոն տոննա։

★ Մեծ չափերով ավելացել է նավթի հանույթը։ 1957 թվականին մեր երկրում նավթի հանույթը հասել է 98 միլիոն տոննայի, 1913 թվականի 9,2 միլիոն տոննայի դիմաց։ Նավթի հանույթի միայն անցյալ տարվա աճը համարյա մեկ ու կես անգամ գերազանցեց նախառևոլյուցիոն Ռուսաստանի նավթի տարեկան ամբողջ հանույթից։

★ Բարձր զարգացման է հասել էլեկտրաէներգիայի արտադրությունը մեր երկրում։ 1913 թվականին 1,9 միլիարդ կիլովատ-ժամից, 1957 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացավ և կազմեց 210 միլիարդ կիլովատ-ժամ։ Միայն Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը տարեկան արտադրելու



է հինգ անգամ շատ էլեկտրաէներգիա, քան Ռուսաստանի բոլոր էլեկտրոկայաններն արտադրել են 1913 թվականին։

★ 1913 թվականի համեմատությամբ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը ՍՍՌՄ-ում աճել է ավելի քան 200 անգամ։

★ 1957 թվականին Սովետական Միությունում երկաթաքարի հանույթը կկազմի մոտավորապես 84 միլիոն տոննա, ցեմենտի արտադրությունը գրեթե 29 միլիոն տոննա, շաքարավազինը՝ ավելի քան 4,5 միլիոն տոննա, բրդե գործվածքեղենինը՝ ավելի քան 280 միլիոն մետր, կաշվե կոշկեղենինը՝ մոտավորապես 313 միլիոն զույգ։

★ 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին աճել է 33 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ։

★ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում աշխատանքի արտադրողականությունը շատ անգամ ցածր էր, քան ԱՄՆ-ում, ինչպես նաև զգալիորեն ցածր, քան Անգլիայում և Ֆրանսիայում։ Ներկայումս ՍՍՌՄ-ը աշխատանքի արտադրողականությամբ արդեն անցել է Անգլիայից ու Ֆրանսիայից և հասնում է ԱՄՆ-ին։

★ 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատանքի տարեկան արտադրողականությունը աճել է մոտավորապես ինն ու կես անգամ, իսկ ԱՄՆ-ում միայն 2,3 անգամ։



չուգուն, քան Անգլիան, Ֆրանսիան ու Բելգիան միա-
սին վերցրած, այնինչ, 1913 թվականին մեր երկիրն
արտադրել է Անգլիայից 2,5 անգամ քիչ և Ֆրան-
սիայից էլ քիչ չուգուն։ Այս տարի ՍՍՌՄ-ում ձուլվել
է ավելի քան 37 միլիոն տոննա չուգուն։

★ ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումը 1957 թվականին
հասել է 51 միլիոն տոննայի, 1913 թվականի 4,2
միլիոն տոննայի փոխարեն։

★ Այժմ ՍՍՌՄ-ն ածխի հանույթով գրավում է
Եվրոպայում առաջին, իսկ աշխարհում երկրորդ տե-
ղը։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում արդյունահանվել է
462 միլիոն տոննա ածուխ, այնինչ 1913 թվականին
ածխի հանույթը եղել է ընդամենը 29,1 միլիոն տոն-
նա։

★ Մեծ չափերով ավելացել է նավթի հանույթը։
1957 թվականին մեր երկրում նավթի հանույթը հա-
սել է 98 միլիոն տոննայի, 1913 թվականի 9,2 մի-
լիոն տոննայի դիմաց։ Նավթի հանույթի միայն անց-
յալ տարվա աճը համարյա մեկ ու կես անգամ գե-
րազանցեց նախառևոլյուցիոն Ռուսաստանի նավթի
տարեկան ամբողջ հանույթից։

★ Բարձր զարգացման է հասել էլեկտրաէներգիա-
յի արտադրությունը մեր երկրում։ 1913 թվականին
1,9 միլիարդ կիլովատ-ժամից, 1957 թվականին է-
լեկտրաէներգիայի արտադրությունը ավելացավ և
կազմեց 210 միլիարդ կիլովատ-ժամ։ Միայն Կույ-
բիշևի հիդրոէլեկտրակայանը տարեկան արտադրելու



է հինգ անգամ շատ էլեկտրաէներգիա, քան Ռուսաս-
տանի բոլոր էլեկտրոկայաններն արտադրել են 1913
թվականին։

★ 1913 թվականի համեմատությամբ մեքենաշի-
նության և մետաղամշակման արտադրանքը
ՍՍՌՄ-ում աճել է ավելի քան 200 անգամ։

★ 1957 թվականին Սովետական Միությունում եր-
կաթաքարի հանույթը կկազմի մոտավորապես 84
միլիոն տոննա, ցեմենտի արտադրությունը գրեթե 29
միլիոն տոննա, շաքարավազինը՝ ավելի քան 4,5 մի-
լիոն տոննա, բրդե գործվածքեղենինը՝ ավելի քան 280
միլիոն մետր, կաշվե կոշկեղենինը՝ մոտավորապես
313 միլիոն զույգ։

★ 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ի ամ-
բողջ արդյունաբերության համախառն արտադրանքը
1957 թվականին աճել է 33 անգամ, այդ թվում ար-
տադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ։

★ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում աշխատանքի
արտադրողականությունը շատ անգամ ցածր էր, քան
ԱՄՆ-ում, ինչպես նաև զգալիորեն ցածր, քան Ան-
գլիայում և Ֆրանսիայում։ Ներկայումս ՍՍՌՄ-ը աշ-
խատանքի արտադրողականությամբ արդեն անցել է
Անգլիայից ու Ֆրանսիայից և հասնում է ԱՄՆ-ին։

★ 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ ար-
դյունաբերության մեջ աշխատանքի տարեկան ար-
տադրողականությունը աճել է մոտավորապես ինն
ու կես անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 2,3 անգամ։

Մեզ մոտ աշխատանքի արտադրողականությունն աճում է գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն արմատավորման, մեքենայացման և աշխատանքի պայմանների բարելավման հիման վրա։

★ Ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության բուռն և անշեղ վերելքի շնորհիվ վիթխարի չափերով ավելացել է ազգային եկամուտը։ Բնակչության մեկ շնչի հաշվով ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 13 անգամ։ Նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամուտը աճել է երկու անգամից էլ պակաս, իսկ Անգլիայում և Ֆրանսիայում՝ 1,6 անգամից միայն փոքր ինչ ավելի։

★ Մեր ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը 1913 թվականին եղած 12 միլիոն 900 հազարից 1957 թվականին հասավ 52 միլիոն 600 հազարի, այսինքն աճեց ավելի քան 4 անգամ։

★ Սովետական Միությունը այնպիսի բարձր մակարդակի է հասցրել իր գիտությունն ու տեխնիկան, իր արդյունաբերությունը, որ նա կարողացավ տիեզերք արձակել երկրի արհեստական երկու արբանյակ։

★ Նախնական պլաններով մոտավորապես 15 տարում ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքի տարեկան արտադրությունը կհասնի հետևյալ մակար-



դակին. երկաթահանքի հանույթը՝ 250—300 միլիոն տոննա, չուգունի ձուլումը՝ 75—85 միլիոն տոննա, պողպատինը՝ 100—120 միլիոն տոննա, ածխի հանույթը, 600—750 միլիոն տոննա, նավթինը՝ 350—400 միլիոն տոննա, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 800—900 միլիարդ կիլովատ-ժամ, ցեմենտի արտադրությունը 90—110 միլիոն տոննա, շաքարինը՝ 9—10 միլիոն տոննա, բրդե գործվածքեղենինը՝ 550—650 միլիոն մետր, կաշվե կոշկեղենինը՝ 600—700 միլիոն զույգ։

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
## 1958 ԹՎԱԿԱՆԻ
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ։

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1— ամիսը — 1 ռ.*

*6— ամիսը — 6 ռ.*

*12— ամիսը — 12 ռ.*

*Մեկ համարը — — 50 կոպ.*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 22 1957 г.

ՎՖ 08909 Պատվեր 814 Տիրաժ 8510

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։